## Ամերիկայի դրամական խարդախութիւնը

Տոլարին նոր արժէքը եւ ոսկիի գնման համար սահմանուած գինը տակն ու վրայ բրին Լոնտոնի հրապարակը: Փետրուար 2ին ոսկիի գինը մէկ անգամէն չորս շիլին բարձրացաւ, հասնելով 139 շիլինի (մէկ ունկին): Այս գնով 4,200,000տոլարի ոսկի գնուեցաւ «անծանօթ»ի մը համար, ինչ որ կը նշանակէ Ամերիկա: Միեւնոյն ատեն տոլարը բարձրացաւ, իսկ անգլիականը իջաւ 77 ֆրանքի: Կ'ըսուի թէ Լոնտոնի մէջ ծախուած ոսկիին մեծ մասը գնուած էր Փարիզէն:

⁂ Ուաշինկթընէն կը հեռագրեն թէ ծերակոյտը օրինագիծ մը քուէարկեց, որուն համաձայն ամերիկեան հրապարակը կը փակուի այն երկիրներուն առջեւ որոնք չեն վճարած իրենց պարտքերը: Այս օրէնքէն պիտի վնասուին 18 պետութիւններ, որոնց գլուխը կը գտնուին Ֆրանսան: Ասոնց արժեթուղթերը չպիտի կրնան ծախուիլ ամերիկեան սակարաններուն մէջ:

## Արեւնի բանտարկեալները արձակուած

Արէնքէն կը գրեն մեզի յունուար 29 թուականով.— *Անպարտ արձակուեցան ուսուցիչ Մանուկ Մանուկեան եւ Խաչիկ Կարապետեան, որոնք բանտարկուած էին մատնանշումով, Ս. Գըլըճեանի սպանութեան առթիւ: Բանտը կը մնայ միայն Նիկոլ Նիկողոսեան որ պիտի դատուի: Վերջին պահուն կրկին ձերբակալուեցան Քոքինիոյ տղաքներէն հինգ հոգի, որոնք անգամ մը հարցաքննուած եւ ազատ արձակուած էին: Այս բոլոր գործողութիւնները հետեւանք են ցուցմունքներու: Արդարութիւնը շուտով երեւան կ'ելլէ:*

# «ՅԱՌԱՋ»Ի ՆՈՐ ՎԻՃԱԿԱԽԱՂԸ
## ԻՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ ԵՒ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐՈՒՆ ՀԱՄԱՐ

### «ՅԱՌԱՋ»Ի ՎԱՐՉՈՒԹԻՒՆԸ ԳՆԱԾ Է ԶԵՏԵՒԵԱԼ ԵՐԵՔ ՏՈՄՍԵՐԸ, ԻՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ ՀԱՄԱՐ

| | | | |
|---|---|---|---|
| *8րդ շերտ թիւ* | *04,738* | *շարք* | **R.** |
| - - - | *53,171* | - | **U.** |
| - - - | *75,619* | - | **V.** |

Շահելու պարագային, ԱՐԴԻՒՆՔԻՆ ԿԷՍԸ ՊԻՏԻ ԲԱԺՆՈՒԻ անոնց որ.—

1. ՆՈՐ ԲԱԺԱՆՈՐԴ կը գրուին, փետրուար 6էն մինչեւ վիճակահանութեան օրը, ԿԱՆԽԻԿ ՎՃԱՐԵԼՈՎ:

2. ԿԸ ՆՈՐԵԳԵՆ իրենց բաժանորդագրութիւնը, ԿԱՆԽԻԿ ՎՃԱՐԵԼՈՎ:

3. Ինչպէս եւ այն ՏԱՐԵԿԱՆ եւ ՎԵՑԱՄՍԵԱՅ բաժանորդներուն որոնք մասնակցեցան «ՅԱՌԱՋ»ի առաջին վիճակախաղին, ԿԱՆԽԻԿ ՎՃԱՐԵԼՈՎ: (Եռամսեայ բաժանորդներէն կ'օգտուին անոնք որ նոր ԲԱԺՆԵԳԻՆ մը կը վճարեն):

Բաշխումը պիտի ըլլայ հետեւեալ համեմատութեամբ.—

| | |
|---|---|
| ՏԱՐԵԿԱՆ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ | 50% |
| ՎԵՑԱՄՍԵԱՅ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ | 30% |
| ԵՌԱՄՍԵԱՅ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ | 20% |

Իսկ 9րդ շերտէն գնած ենք հետեւեալ տոմսերը, ԱՅՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐՈՒՆ ՀԱՄԱՐ ՈՐ ԱՄԷՆ ՕՐ ՁԵՌՔԷ ԿԸ ԳՆԵՆ:

| | | | |
|---|---|---|---|
| *9րդ շերտ թիւ* | *28,474* | *շարք* | **Y.** |
| - - - | *54,726* | - | **X.** |
| - - - | *81,172* | - | **R.** |

Այս թիւերն ալ շահած պարագային, ԱՐԴԻՒՆՔԻՆ ԿԷՍԸ պիտի բաժնուի բոլոր այն ընթերցողներուն որոնք վարչութեան կը ներկայացնեն ՑԻՍՈՒՆ ՅԱՋՈՐԴԱԿԱՆ ԿՏՐՕՆՆԵՐ, սկսելով 1934 փետրուար 6էն:

Կտրօնները ամէն օր պիտի հրատարակուին Գ. էջի թերթօնին տակը, Թիւով եւ Թուականով:

Յ. Հ. Դ.

**Գաւառ**

*ԼԻՕՆԻ ընկերական ընդհանուր ժողովը այսօր կիրակի կէս օրէ վերջ ժամը 2.30ին* 14, rue François Garcin*: Ներկայ կ'ըլլայ ընկեր* **Գ. ԲԱԼԱՅԵԱՆ**:

*ՄԱՐՍԷՅԼԻ «Աղբիւր Սերոբ» ենթակոմիտէի ժողովը այսօր Կիրակի կէս օրէ վերջ ժամը 2.30ին սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է: Ներկայ կ'ըլլայ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը:*

## ՑԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

կազմակերպուած ՊԱՆԵԷՕ-ՔԱՇԱՆԻ Հ. Յ. Դ. ԱՐԾԻՒ ԵՆԹԱԿՈՄԻՏԷԻՆ կողմէ

Այսօր կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30էն մինչեւ կէս գիշեր

**MAISON VERON**ի սրահին մէջ, **150 Route d'Orléans, Bagneux**

*Արտասանութիւն, երգ, հայկական եւ կովկասեան պարեր*

*կը ներկայացուի* **«Ես մեռայ»** *(զաւեշտ)*

## ՀԱՅ ՍԱՓՐԻՉՆԵՐՈՒ ԵՐԿՐՈՐԴ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ԿԻՐԱԿԻ ԳԻՇԵՐ 18 ՄԱՐՏ 1934 ԺԱՄԸ 9ԷՆ ՄԻՆՉԵՒ ԼՈՅՍ

**SYNDICAT de l'ÉPICERIE FRANCAISE**ի *ՍՐԱՀԻՆ ՄԷՋ*

**12, rue Renard Métro: Hôtel de Ville**

Մանրամասնութիւնները մօտ օրէն: կը խնդրուի նկատի ունենալ այդ թուականը:

## Յոբելեան Վահան Թէքէեանի

*Վահան Թէքէեանի քառասնամեայ գրական գործունէութեան յոբելեանի հանդէսը տեղի կ'ունենայ Փետրուար 10ի Շաբաթ իրիկունը, ժամը 8.30ին, Սալ Կավոյի մեծ սրահին մէջ, 47 Րիւ Լա Պոէսի, նախագահութեամբ Պ. Լեւոն Կիւմիւշկէրտանի:*

*Յոբելեարին գրական գործունէութեան մասին կը խօսին Պ. Պ.* Լեւոն Բաշալեան, Արշակ Չօպանեան *եւ* Գեղամ Ֆէնէրճեան:

*Գեղարուեստական բաժնին իրենց մասնակցութիւնը կը բերեն Օր.Օր.* Մարգարիտ Բաբայեան, Հայկանուշ Թօրոսեան (*Երգ*), Ռոպինա Ալիքսանեան (*Արտասանութիւն*): *Պարոններ* Ա. Շահխաթունի (*Արտասանութիւն*), Ֆիլիբ Աղազարեան (*Ջութակ*), Ս. Սարգիսեան (*Դաշնակ*) *եւ ֆրանսացի արուեստագիտուհիներէ բաղկացած քուաթիւոր մը:*

*Պիտի երգուին Վ. Թէքէեանի չորս քերթուածներ, Պ. Պ.* Ա. Պարթեւեանի. գ. Մ. Ալէմշահի *եւ* Շահան Պէրպէրեանի *երաժշտութեամբ:*

*Հանդէսին մուտքը ազատ է:*

Կը խնդրուի կանխաւ հրաւիրատոմսեր ապահովել դիմելով հայ թերթերու խմբագրատուններ, եւ հետեւեալ հասցէներուն.—

*Ալֆորվիլ`* Պ. Գուրուեանի, *Առնուվիլ`* Պ. Նիկողոսեանի, *Շավիլ`* Պ. Տէր Գալուստեանի, *Պէլվիլ`* Պ. Արփիարի, *Պուա-Գոլոմպ`* Պ. Գ. Յակոբեանի, *Սեւրան`* Պ. Պ. Պատէմեանի, *Հրանդ Սամուէլ Գրատուն`* 51, *Րիւ Մէօսիէօ լը Փրէնս:*

Հանդէսը կը վերջանայ ժամը *11.30*ին:



## ՑՈՒՇԱՏԵՏՐ

*ԱԼՖՈՐՎԻԼԻ Չէնկիլէրցիներու նորակազմ երկսեռ Հայրենակցական Միութեան ընդհանուր ժողովը տեղի կ'ունենայ այսօր Կիրակի կէս օրէ վերջ ժամը 2ին Ալֆորվիլի Հայ Ակումբին մէջ,* 1 Bld. Carnot: *Կը խնդրուի բոլոր հայրենակիցներէն ներկայ գտնուիլ:*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*— Կը փնտռուի Տէօրթեօլցի Պ. Լեւոն Սոփօկլեան, Քէլէկեան Որբանոցի սաներէն, որ կը գտնուէր Փարիզի շրջակայքը, բայց մէկ տարիէ ի վեր իր մասին տեղեկութիւն չկայ: Կը խնդրուի իր մասին ստոյգ տեղեկութիւն ունեցողներէն իմացնել`* Onnig Mikayélian. 2, rue des Carmelins. Marseille:

*— Կը փնտռեմ եղբօր աղջիկս Աֆիօն-Գարահիսարցի Տիկ. Աննիկ (ծնեալ Ապրօեան), հօր անունը` Ղազարոս, մօր անունը` Մարիամ: Ինքը հիւանդապահուհի էր: Տասը տարի առաջ ամուսնացած է Նիւ Եորքի մէջ եւ իրմէ տեղեկութիւն չկայ: Լուր կայ թէ հինգ տարի առաջ իր ամուսինը մեռած է: Իմացնել իր հօրաքրոջ Տիգրանուհի Ապրօեանի,* Orient Tapis, St. Jérôme, Marseille, France:

*Կը խնդրուի Ամերիկահայ թերթերէն արտատպել:*




Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme, PARIS (13e)
Le Gérant: H. STEPHAN

## Տնտեսական նոր ձեռնարկներ Սուրիոյ մէջ

Սուրիոյ մարզպանը Փարիզ մեկնելէ առաջ, կարեւոր յայտարարութիւն մը ուղղեց տեղական մամուլին, տնտեսական ձեռնարկներու մասին: Հայֆայի նոր նաւահանգիստին բացումը ծանր մտահոգութիւն կը պատճառէ հոգատար իշխանութեան, Պէյրութի ապագայի մասին:

Մարզպանին յայտարարութեանց համաձայն, պիտի ընդարձակուի Պէյրութի նաւահանգիստը, 40 միլիոն փրանք ծախսուելով որ պիտի ճարուի մաքսային հասոյթներէն: Անցեալ շաբթու ազատ գօտի մը բացուեցաւ նաւահանգիստին մէջ, Իրաքի եւ Իրանի համար: Նոր երկաթուղիներ պիտի շինուին հիւսիսային Սուրիոյ մէջ, զարկ տալու համար Թուրքիոյ եւ Պարսկաստանի հետ եղած առեւտուրին: Այս մասին անհրաժեշտ կարգադրութիւնները եղած են անցեալ դեկտեմբերին եւ աշխատանքները պիտի սկսին շուտով: Յետոյ բարւոքումներ պիտի կատարուին Դամասկոս – Պաղտատ անապատի ճամբուն վրայ, որպէսզի ինքնաշարժները կարենան դիւրաւ բանիլ ամառ – ձմեռ:

## Խանութպաններու գործադուլը Պելկրատի մէջ

*Փետր. 7ին կէս ամսյի քաղաքի մը երեւոյթն ստացած էր Պելկրատը: Կառավարութիւնը որոշած ըլլալով 650 միլիոն տինարի (երեք միլիոն անգլ. ոսկի) նոր տուրք մը հաստատել, բոլոր խանութները փակուեցան, բացի փուռերէն: Փակուեցան նաեւ բոլոր ճաշարաններն ու սրճարանները, բացի շոգեկառքերու ըմպելարաններէն: «Թաքսի»ներու շարժավարներն ալ միացան գործադուլին, բայց հանրակառքերը բանեցան: Իրիկուան ժամը 7ին, երբ գործադուլը պիտի վերջանար, կարգ մը խանութներ բացուեցան: Հակառակ ցոյցին, խորհրդարանը ջախջախիչ մեծամասնութեամբ վաւերացուց տուրքերը: Խանութպանները կը խորհին նոր գործադուլ մը կազմակերպել, այս անգամ իրենց ետեւէն քաշելով գաւառի առեւտրականները:*

## Հետապնդում Աւստրիոյ ընկերվարականներուն դէմ

*Վիեննայի ոստիկանութիւնը փետր. 8ին զինուորներու օգնութեամբ խուզարկեց ընկերվարական «Արպայթէր Ցայթունկ»ի գրասենեակները, ուր կը գտնուի նաեւ կուսակցութեան զինեալ պահակներուն կեդրոնը: Անցեալ շաբթու խուզարկութիւն մը կատարուելով ընկերվարականներու ուրիշ մէկ հաւաքավայրին մէջ, զէնքեր, ռազմանիւթ եւ պայթուցիկներ երեւան հանուած էին: Քննութիւնները յառաջ տարուելով, գտնուեցան նաեւ թաղուած գնդացիրներ, փամփուշտներ եւ ռումբեր: Պաշտօնաթերթի խմբագրատան խուզարկութիւնը տեւեց ամբողջ օրը եւ գիշերը:*

*⁂ Լոնտոնի աւստրիական դեսպանը Անգլիոյ արտաքին նախարարութեան յանձնեց տեղեկագիր մը որուն հիման վրայ Ազգերու Դաշնակցութեան միջամտութիւնը կը խնդրէ, Գերմանիոյ դաւերուն եւ ոտնձգութիւններուն դէմ: Տեղեկագիրը մասնաւորապէս կը ծանրանայ հետեւեալ կէտերուն վրայ.— 1. Բաշխում խռովարարական հրատարակութեանց.— 2. Հայթայթում կազմարձակ ռումբերու.— 3. Դրամական աջակցութիւն հիթլէրական կազմակերպութեանց: Լոնտոնի մէջ միշտ վերապահ են եւ դիտել կու տան թէ միայն բարոյական փաստերը բաւական չեն, այլ պէտք է ճարել նաեւ նիւթական փաստեր, որպէսզի Ազգերու Դաշնակցութիւնը կարենայ միջամտել:*

---

## ՓԵՏՐՈՒԱՐ 18Ը ԿԸ ՏՕՆՈՒԻ

**ՇԱՎԻԼԻ ՄԷՋ**

*ԸՆԿԵՐԱՀԱՄԱԿՐԱԿԱՆ ՀԱՆԴԻՊՈՒՄ ՇԱՎԻԼԻ ՄԷՋ ՓԵՏՐՈՒԱՐ 18Ի ԱՌԹԻՒ*

կազմակերպուած Հ. Յ. Դ. Շավիլի *ԱՐՂՈՒԹԵԱՆ* խումբի կողմէ

*ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ ԿԷՍ ՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ 2.30ին*

20, Avenne Ville d'Avray. Chaville

ներկայ կ'ըլլան մեր երեք ընկերներէն՝

**ԲԺ. ՏԷՐ ԴԱՒԹԵԱՆ, Ա. ԳԻԼԽԱՆԴԱՆԵԱՆ, Ս. ՎՐԱՑԵԱՆ** *եւայլն*

բանախօսութիւն, երգ եւ արտասանութիւն:

Սէն Լազարէն շոգեկառք առնել ժամը 2.26 եւ 2.56ին: ընկերներ պիտի սպասեն Շավիլի կայարանը: փօն տը Սէվռէն ծանրակառք առնել եւ իջնել Շավիլ, փիւիթ սան վէն:

*Ծախքերու մասնակցութեան համար կը գանձուի 3 ֆրանք.*

---

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

**Հրապարակային մեծ բանախօսութիւն**

*Կազմակերպուած նախաձեռնութեամբ ՀԱՅ ԿՐԹԱԿԱՆ ԵՒ ՀՐԱՏԱՐԱԿՉԱԿԱՆ ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋ. ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ*

ՏԵՂԻ Կ'ՈՒՆԵՆԱՅ ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ ԿԷՍ ՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ 2ԻՆ

ՈՐԷՈԱՆ ՄԱՐՍԷՅԷԻՍՐԱՀԻՆ ՄԷՋ *146, Ave. des Chartreux*

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ՝ Պ. **Մ. ՎԱՐԱՆԴԵԱՆ**

ԿԸ ԽՕՍԻ՝ Պ. **Ա. ԱՀԱՐՈՆԵԱՆ**

ՆԻՒԹ՝ **ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԸ**

գեղարուեստական խնամուած բաժին: կը մասնակցին ֆրանսացի եւ հայ ծանօթ գեղարուեստագէտներ:

*Առնել հանրակառք թիւ՝* 1,4, 5, 11, 12, 41, 48, 53.

---

## ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԺՈՂՈՎ

կազմակերպուած *ՀԱՅ ԿԱՄ. եւ ՄԱՐՏԻԿՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՀԻՄՆԱԴԻՐ ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ*

*Այսօր, Կիրակի կէս օրէ վերջ ժամը 2.30ին*

120, Պուլվառ տը Պէլվիլ

*Կը խօսին՝ Գնդ. ՊԱՂՏԱՍԱՐԵԱՆ, Պ. Պ. Խ. ԳԱԼՈՒՍՏԵԱՆ եւ Ս. ԱՅՎԱԶԵԱՆ*

---

## Թատերական ներկայացում

կազմակերպուած՝ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ԿՈՂՄԷ

*ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ ԿԷՍ ՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ 3ին*

*ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆ ԹԱՏԵՐԱՍՐԱՀԻՆ ՄԷՋ* 26, rue Troyon, Sèvres

*ՄՈՒՏՔ 10 ՖՐԱՆՔ.*

---



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*Հ. Մ. Ը. Մ.*

*Ալֆորվիլի մ.ճիւղին բոլոր գործօն թէ համակիր անդամները ժողովի կը հրաւիրուին այս չորեքշաբթի գիշեր, 14 փետր., ժամը 9ին, Հայոց եկեղեցիին կից ակումբը: Ներկայ կ'ըլլան շրջանային վարչութեան ներկայացուցիչները:*



## Տրամադրելի է

*Վարժուհի մը, որ կրնայ տալ նաեւ երգի դասեր: Ի հարկին դաւառ ալ կ'երթայ: Դիմել «Յառաջ»ի վարչութեան:*

Le Gérant: H. STEPHAN
17, Rue Damesme, PARIS (13e)
Imprimerie A. DER (AGOPIAN)



## Կ'ՈՒԶՈՒԻ ՀԱՅ ԿԻՆ ՄԸ

ՎԱՐ ՆԱԶԱՆԳԻՆ *մէջ բնակող հայրենակից մը կը փնտռէ տարեց, քաջառողջ եւ վստահելի կին մը՝ տնական գործերու եւ երկու փոքրիկ երախաներ (5 եւ 9 տարեկան) խնամելու համար: Դիմել՝ ՅԱՌԱՋԻ վարչութեան:*

## ՎԵՐՋԻՆ ԽՌՈՎՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ՎՆԱՍՆԵՐԸ

Պաշտօնական տեղեկագրի մը համաձայն, փետր. 6–12 խռովութեանց հետեւանքով միայն Փարիզի մէջ ոչնչացած են 150 փողոցի նստարաններ, 450 լապտեր, 250 լուսատու ձողեր եւ 89 ուրիշ ձողեր՝ որ սահմանուած են երթեւեկի ղեկավարութեան: Կտոր կտոր եղած են նաեւ ծառերը շրջապատող 1433 երկաթ վանդակներ, ինքնաշարժ կշիռներ, 10 ժամացոյցներ եւն.: Վերջապէս, քանդուած են 20 լրագրավաճառի կրպակներ եւ 3 միզարաններ: 43 ծառեր ալ արմատախիլ հանուած են:

Առեւտրականները արդէն իսկ դիմում կատարած են, հատուցում պահանջելով: Այս դէպքերուն հետեւանքով տակաւին հիւանդանոցները կը մնան 103 հոգի, որոնց 18ին կեանքը վտանգի մէջ է:

### ՀԻԹԼԷՐԻ ԳԻՐՔԸ ՖՐԱՆՍԵՐԷՆԻ ԹԱՐԳՄԱՆՈՒԱԾ

*Տեղական թերթերը կ'ըսեն թէ հրատարակչական տուն մը նկատի չառնելով Հիթլէրի արգելքը, ամբողջովին ֆրանսերէնի թարգմանած է անոր գիրքը, «Իմ Պայքարս» (Մայն Քամփֆ): Մինչեւ հիմա միայն հատուածներ կը հրատարակուէին այստեղ, մինչ գիրքը անգլիերէնի թարգմանուած է չատոնց: Գերմանական տպագրութիւնը սպառած է մէկ միլիոն օրինակ:*

Այրի տիկին Մարիամ Լուսիկեան, Սիրանուշ Լուսիկեան, Այրի տիկին Զարուհի Լուսիկեան եւ Զաւակունք, Խաչիկ, Գեղանուշ, Նորայր, Քաջայր Լուսպարոնեան, Տէր եւ տիկին Տելեմակ Լուսիկեան, Հրաչեայ Լուսիկեան, Տէր եւ տիկին Սուրէն Գարախանեան սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, տաքրոջ, հօրեղբօր եւ քեռայրին՝

### ՄԱՏԱԹԻԱ ԼՈՒՍԻԿԵԱՆԻ

դառնաղէտ մահը որ տեղի ունեցաւ փետր. *14*ին Hôpital Pitiéի մէջ:

Յուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ այսօր, կիրակի առաւօտ ժամը *10*ին Hôpital Pitié, 22 rue Bruant (մէթրօ՝ National կամ Chevaleret): Հանգուցելոյն մարմինը պիտի ամփոփուի Թիէի գերեզմանատունը:

## „ՅԱՌԱՋ"Ի ՆՈՐ ՎԻՃԱԿԱԽԱՂԸ

## ԻՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ ԵՒ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐՈՒՆ ՀԱՄԱՐ

### „ՅԱՌԱՋ"Ի ՎԱՐՁՈՒԹԻՒՆԸ ԳՆԱԾ ԷՀԵՏԵՒԵԱԼ ԵՐԵՔ ՏՈՄՍԵՐԸ, ԻՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ ՀԱՄԱՐ

| | | | |
|---|---|---|---|
| 8րդ շերs թիւ | 04,738 | շարք | R. |
| - - - | 53,171 | - | U. |
| - - - | 75,619 | - | V. |

Շահելու պարագային, ԱՐԴԻՒՆՔԻՆ ԿԷՍԸ ՊԻՏԻ ԲԱԺՆՈՒԻ անոնց որ.—

1. ՆՈՐ ԲԱԺԱՆՈՐԴ կը գրուին, փետրուար 6էն մինչեւ վիճակահանութեան օրը, ԿԱՆԽԻԿ ՎՃԱՐԵԼՈՎ:

2. ԿԸ ՆՈՐԵՆ իրենց բաժանորդագրութիւնը, ԿԱՆԽԻԿ ՎՃԱՐԵԼՈՎ:

3. Ինչպէս եւ այն ՏԱՐԵԿԱՆ եւ ՎԵՑԱՄՍԵԱՑ բաժանորդներուն որոնք մասնակցեցան « ՅԱՌԱՋ »ի առաջին վիճակախաղին, ԿԱՆԽԻԿ ՎՃԱՐԵԼՈՎ: (Եռամսեայ բաժանորդներէն կ'օգտուին անոնք որ նոր ԲԱԺՆԵԳԻՆ մը կը վճարեն):

Բաշխումը պիտի ըլլայ հետեւեալ համեմատութեամբ.—

| | |
|---|---|
| ՏԱՐԵԿԱՆ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ | 50% |
| ՎԵՑԱՄՍԵԱՑ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ | 30% |
| ԵՌԱՄՍԵԱՑ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ | 20% |

Իսկ 9րդ շերտէն գնած ենք հետեւեալ տոմսերը, ԱՅՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐՈՒՆ ՀԱՄԱՐ ՈՐ ԱՄԷՆ ՕՐ ՋԵՌՔԷ ԿԸ ԳՆԵՆ:

| | | | |
|---|---|---|---|
| 9րդ շերs թիւ | 28,474 | շարք | Y. |
| - - - | 54,726 | - | X. |
| - - - | 81,172 | - | R. |

Այս թիւերն ալ շահած պարագային, ԱՐԴԻՒՆՔԻՆ ԿԷՍԸ պիտի բաժնուի բոլոր այն ընթերցողներուն որոնք վարչութեան կը ներկայացնեն ՅԻՍՈՒՆ ՅԱՋՈՐԴԱԿԱՆ ԿՏՐՕՆՆԵՐ, սկսելով 1934 փետրուար 6էն:

Կտրօնները ամէն օր պիտի հրատարակուին Գ. էջի թերթօնին տակը, Թիւով եւ Թուականով:

### ԸՆԿԵՐԱՀԱՄԱԿԱՐԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

Սէն Շամոնի *ՎԱՐՈՒԺԱՆ* ենթակոմիտէին կողմէ

Այսօր կիրակի կէս օրէ վերջ ժամը 3ին ճայկ. սրճարանին ներքնասրահը:

*Կը հրաւիրուին համակիրները:*

*ԼԻՈՆԻ «ՀԱՅ ԱՐԻ» Գայլիկներու Փետրուար 17ի պարահանդէսը յետաձգուած է Մարտ 3ին:*

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Հայ Սպայից Միութիւնը կը ծանուցանէ թէ այսօր կիրակի Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ *15*, rue Jean Goujon, հոգեհանգիստ պիտի կատարուի Հայաստանի Հանրապետութեան սպարապետ Նազարբէկեանի մահուան երրորդ տարելիցին առթիւ:

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

*ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐՈՒ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԵԱՆ տարեկան ընդհ. ժողովը պիտի գումարուի վաղը 19 Փետր. իրիկուան ժամը* 8.30*ին*, Café Méphisto (Metro Odeon):

Օրակարգ.— *Վարչութեան համարատուութիւն, ընտրութիւն նոր վարչութեան, առաջարկներ անդամներու կողմէ:*

*Իւրաքանչիւր անդամէ կը խնդրուի կարելին ընել չբացակայելու համար ընդհ. ժողովէն:*

*Կանոնագրի համաձայն, մեծամասնութիւն չգոյանալու պարագային, նոյն օրը որոշուած ժամանակէն քիչ վերջ կը գումարուի Բ. նիստը եւ ժողովը օրինական կը համարուի, առանց նկատի առնելու ներկաներու թիւը:*



Le Gérant: H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme, PARIS (13e)

## ՓԵՏՐ. 18Ը ԿԸ ՏՕՆՈՒԻ

### ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

*Այսօր, կիրակի երեկոյ ժամը 8.30ին*

Sociétés Savantesի *սրահին մէջ* 8, rue Danton

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. **ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ**

ԿԸ ԽՕՍԻՆ ԸՆԿԵՐՆԵՐ՝

**ՎՐԱՑԵԱՆ** «ՓԵՏՐՈՒԱՐԵԱՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԵԱՆ ՊԱՏՃԱՌՆԵՐԸ»

**ՋԱՄԱԼԵԱՆ** «ՓԵՏՐՈՒԱՐ 18Ի ԻՄԱՍՏԸ»

**ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ** «ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆ եւ ՀԱԿԱԴԱՇՆԱԿՑԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ»

*Ծախքերու մասնակցութեան համար կը գանձուի* **2** *ֆրանք:*

### ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

*Նախաձեռնութեամբ ՔՐԻՍՏԱՓՈՐ, ԶԱԽԱՐԵԱՆ եւ ՌՈՍՏՈՄ ԽՈՒՄԲԵՐՈՒ եւ հովանաւորութեամբ ՏԷՍԻՆԻ ԿՈՄԻՏԷԻՆ*

*ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ ԿԷՍ ՕՐԷ ՎԵՐՋ Հ. Յ. Դ. ՏԱՆ ՄԷՋ*

*Կը նախագահէ՝ ընկեր* Ա. ՄԻՔԱՅԷԼԵԱՆ

կը խօսի՝ ընկ. Գ. ՓԱԼԱՅԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին, մասնակցութեամբ ընկերներ՝ Ա. ՄԱՐԳԱՐԵԱՆԻ, Մ. ՄԱՐՏԻՐՈՍԵԱՆԻ, ՄԻՍԱՔ ՄԻՐԶԷԻ ԵՒ ՏԵՍԻՆԻ «ԱՐԾԻՒ» ՖԱՆՖԱՌԻ Ղեկավարութեամբ ընկ. Ա. ՄԵԼՔՈՆԵԱՆԻ

ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՈՒԻ՝ **„ՅԱՂԹԱԿԱՆ ԳԻՇԵՐԸ"**

ԾԱԽՍԵՐՈՒ ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ ՄՈՒՏՔ 2 ՖՐԱՆՔ

*Ծանօթ.*— Հանդէսէն յետոյ ընկերահամակրական խնջոյք Հ.Յ.Դ. Տան թատերասրահը

### ՍԷՆ ԹԸԷԹԻԷՆԻ ՄԷՋ

*Այսօր կիրակի կէս օրէ վերջ*

*Կը խօսի՝ ընկ.* ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ:

### ՎԱԼԱՆՍ-ՌՕՄԱՆԻ ՄԷՋ

*կազմակերպուած ՌՕՄԱՆԻ ԱՆԴՐԱՆԻԿ ԽՈՒՄԲԻ ԿՈՂՄԷ*

տեղի կ'ունենայ այսօր կիրակի երեկոյ ընկերվարականներու սրահին մէջ:

Կը խօսի՝ ընկեր ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ

### ՖՐԱՆՍԱՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ ՕՐԸ

*կը տօնուի Իսի մասնաճիւղին կողմէ այսօր կիրակի կէս օրէ վերջ ժամը 2-6*

2, rue Alexandre Guillmontի սրահին մէջ (Մէօտօն)

*Գեղարուեստական բաժին՝ փոքրերու կողմէ: Երգ, պար, արտասանութիւն:*

Հաղորդակց. Միջոց.— Մոնփառնասէն շոգեկառք առնել եւ իջնել «Էօտօն» փոխ թը վէրսայլէն առնել 23 եւ 32 թիւ ճանրակառքերը եւ իջնել Լա Ֆէրմ Մուլինօ, ուր պիտի սպասեն ճայ սկաուտներ: *Մուտքը՝ ազատ է:*

